# ԱՆԳԼԵՐԵՆԻՑ ՀԱՅԵՐԵՆ ՏԱՌԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆ

Այստեղ ներկայացնում ենք երկու աղյուսակ՝ մեկնաբանություններով հանդերձ: Առաջին աղյուսակը կազմել ենք անգլերենից արևելահայերեն տառադարձության՝ ակադեմիկոս Գևորգ Ջահուկյանի կազմած կանոնախմբի հիման վրա: Երկրորդ աղյուսակը կազմել ենք հայերենի դասական տառադարձության համար, որի սկզբունքներով է պետք տառադարձել մասնագիտական եզրերը:

## ԱՆԳԼԵՐԵՆԻՑ ԱՐԵՎԵԼԱՀԱՅԵՐԵՆ ՏԱՌԱԴԱՐՁՈՒԹՅԱՆ ԱՂՅՈՒՍԱԿ

Ըստ «Անգլերեն բառերի հայերեն տառադարձության մասին» որոշման (նախագծի հեղինակ՝ Գևորգ Ջահուկյան, հաստատվել է տերմինաբանական կոմիտեի կողմից 1983 թ.): Որոշման տեքստը տե՛ս *Տերմինաբանական և ուղղագրական տեղեկատու*, Երևան, 2006, էջ 178-181:

| **Անգլերեն** | **Հայերեն տառադարձություն** | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | **Բառասկիզբ** | **Օրինակներ** | | **Այլ դիրքեր** | **Օրինակներ** | |
| **c [k]** | **ք*** <br>(նաև երբ սրանով սկսվող բառը երկրորդ բաղադրիչ է դառնում) | Carter<br>Clark<br><br>O'Casey<br>O'Connor | Քարտեր<br>Քլարկ<br><br>Օ՚Քեյսի<br>Օ՚Քոնոր | **կ*** | Scott<br>McCormick | Սկոտ<br>Մակ-Քորմիկ |
| **ck** | — | — | — | **կ** | block<br>hockey<br>nock down<br>Dickens<br>Buck<br>Lock<br>McCormick | բլոկ<br>հոկեյ<br>նոկդաուն<br>Դիկենս<br>Բակ<br>Լոկ<br>Մակ-Քորմիկ |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| **k** | **ք***<br>(նաև երբ սրանով սկսվող բառը երկրորդ բաղադրիչ է դառնում) | Kennedy<br>Kent<br><br>MacKinley | Քենեդի<br>Քենտ<br><br>Մակ-Քինլի | **կ*** | Pike<br>Tooke<br>Clark<br>Laski<br>Hawke<br>Lake Placid | Փայկ<br>Թուկ<br>Քլարկ<br>Լասկի<br>Հոկ<br>Լեյկ Փլեսիդ |
| **p** | **փ*** | Pearl<br>Pike<br>Paine<br>Port Patrick | Փիրլ<br>Փայկ<br>Փեյն<br>Փորտ Փատրիկ | **պ*** | Updike<br>champion<br>Chaplin | Ապդայկ<br>չեմպիոն<br>Չապլին |
| **t** | **թ***<br>(նաև երբ սրանով սկսվող բառը երկրորդ բաղադրիչ է դառնում) | test<br>team<br>Taft<br>Taylor<br>Toynbee<br><br>Georgetown<br>MacTavish | թեստ<br>թիմ<br>Թաֆտ<br>Թեյլոր<br>Թոյնբի<br><br>Ջորջթաուն<br>Մակ-Թավիշ | **տ*** | badminton<br>test<br>stress<br>mister<br>Carter<br>football<br>Dwight<br>Margaret<br>Thatcher<br>Taft<br>Roosevelt<br>Port Patrick | բադմինտոն<br>թեստ<br>ստրես<br>միստեր<br>Քարտեր<br>ֆուտբոլ<br>Դուայտ<br>Մարգարետ<br>Թետչեր<br>Թաֆտ<br>Ռուզվելտ<br>Փորտ Փատրիկ |
| **th** | **թ**** | Thatcher<br>Thomson<br>Thoreau<br>Thor | Թետչեր<br>Թոմսոն<br>Թորո<br>Թոր | **թ**** | Smith<br>Plymouth<br>Arthur | Սմիթ<br>Փլիմութ<br>Արթուր |
| **կրկնավորներ** | — | — | — | մեկ **պ**<br>մեկ **տ**<br>մեկ **կ** | vetting<br>Pitt<br>Lippman<br>Scott | վետինգ<br>Փիտ<br>Լիպման<br>Սկոտ |
| **a [æ]** | **ա***** | Adams<br>Allen<br>Alice | Ադամս<br>Ալեն<br>Ալիս | **ա***** | Baxter<br>Harrison<br>Maxwell<br>Nancy<br>Sanford | Բաքստեր<br>Հարիսոն<br>Մաքսուել<br>Նանսի<br>Սանֆորդ |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | | | | Franklin | Ֆրանկլին |
| **a [eɪ]** | — | — | — | **է** | Bacon<br>Davis<br>James<br>Wales<br>Cambridge | Բեկոն<br>Դեվիս<br>Ջեմս<br>Ուելս<br>Քեմբրիջ |
| **[ei] ai, ay, ei** | — | — | — | **էյ** | Paine<br>Dayton<br>Taylor<br>Leyton | Փեյն<br>Դեյտոն<br>Թեյլոր<br>Լեյտոն |
| **անշեշտ ə** | — | — | — | **ո՛չ «ը»**<br> (արտահայտել անգլերենում գրված անգլ. ձայնավորների համապատասխան տառերով)<br><br>*Մանչեստրը* համարել թույլատրելի։ | Byron<br><br>Bacon<br>Lippman<br>mister<br>Ulster | Բայրոն (ո՛չ՝ Բայրըն)<br>Բեկոն<br>Լիպման<br>միստեր<br>Օլստեր |
| **w** | **ու**‡<br>(wa=ուո)<br><br>**վ**<br>(միայն «ու»-ից առաջ՝ կրկնակ «ու»-ից խուսափելու համար) | Walton<br>Whitehall<br>Wall Street<br>Wilde<br>Wilkinson<br><br>Wood<br>Woodrow<br>Wolfe | Ուոլտոն Ուայտհոլ<br>Ուոլստրիտ<br>Ուայլդ Ուիլկինսոն<br><br>Վուդ<br>Վուդրո<br>Վուլֆ | **ու**‡ | Broadway<br>Dwight<br>Port Conway<br><br><br>Harwood | Բրոդուեյ<br>Դուայտ<br>Փորտ Քոնուեյ<br><br><br>Հարվուդ |
| **s [z]**<br>(ձայնեղ բաղաձայննե-րից հետո) | — | — | — | **ս**‡ ‡ | Times<br>James<br>Wales | Թայմս<br>Ջեմս<br>Ուելս |
| **r, l** | — | — | | **ր/ռ, լ** | Jefferson | Ջեֆերսոն |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| (չարտասանվող) | | | | | Harbor<br>Carter<br>Faulkner | Հարբոր<br>Քարտեր<br>Ֆոլկներ |
| **rn, rl** | — | — | | **ռն, ռլ**‡‡‡ | California<br>Barnes<br>Pearl<br>Charles | Կալիֆոռնիա<br>Բառնս<br>Փիռլ<br>Չառլզ |
| **x [ks]** | **քս** † | xylophone | քսիլոֆոն | **քս** | Baxter<br>Maxwell | Բաքստեր<br>Մաքսուել |

* Արդեն լայն տարածում գտած բառերի և հատուկ անունների ավանդական ուղղագրությունը թողնել անփոփոխ, օր.՝ կոնգրեսմեն (congressman), կու-կլուքս-կան (Ku Klux Klan) (փխ. քու-քլուքս-քլան), Նյու Յորք (փխ. Նյու Յորկ), Տվեն և այլն:

** Այսպես պիտի տառադարձվի ***θ*** արտասանվող ***th*** տառակապակցությունը: Իսկ ***ð*** արտասանվողը պիտի տառադարձվի ***դ***:

*** Արդեն տարածված բառերի ուղղագրությունը թողնել անփոփոխ, օր.՝ դենդի (dandy), Թրումեն (Truman), լենդլորդ (landlord), չեմպիոն (champion):

‡ Ավանդաբար ***վ***-ով տառադարձված՝ լայն տարածում ունեցող բառերի ***վ***-ն պահպանել. օր.՝ Վալտեր Սկոտ (Walter Scott), Վաշինգտոն (Washington), վատտ (Watt), Վիլյամ (William), Դարվին (Darwin):

‡‡ Ավանդաբար ***զ***-ով գրվող և արտասանվող բառերը թողնել ***զ***-ով. օր.՝ Թեմզա (Thames), Չառլզ (Charles):

‡‡‡ Հայերենում ընդհանրապես (բոլոր լեզուներից էլ արված տառադարձություններում) ***լ***-ից և ***ն***-ից առաջ սովորաբար ***ռ*** է գրվում (*Կոպեռնիկոս, Բեռն, Բեռլին, Նիդեռլանդներ*), իսկ մնացած դիրքերում՝ ***ր***: Սա բխում է հայերենի հնչյունական համակարգի առանձնահատկություններից:

† **X**-ով սկսվող բառերի օրինակներ չկան Ջահուկյանի այս կանոնախմբում, սակայն, քանի որ այս տառով սկսվող անգլերեն բառերի մեծ մասը հունական ծագում ունի, ինչպես մեր բերած օրինակը, ապա տրամաբանությունը հուշում է, որ այդ տառը հայերենում պիտի արտահայտվի այնպես, ինչպես հայերենում ավանդաբար արտահայտվում է հունարեն համապատասխան տառը (ξ - «քսի»), եթե անգլերենում նույնպես ունի հունարեն տառի հնչումը՝ [ks]:

✦✦✦

Ըստ վերոբերյալ կանոնախմբի՝ անգլերենից արևելահայերեն տառադարձելիս հատկապես պետք է հիշել ներքոբերյալը:

Անգլերեն **p, k, t** տառերը և **ck** տառակապակցությունը պետք է տառադարձվեն բառասկզբում **փ, ք, թ**, իսկ մնացած դիրքերում՝ **պ, կ, տ**։

**ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**

Եթե անգամ ինչ-որ մարդիկ որոշում են տառադարձել անգլերեն բառերը ո՛չ ըստ վերոնշյալ որոշման կանոնների, այլ, ըստ իրենց, հնարավորինս կրկնօրինակելով անգլերեն արտասանությունը, ապա պետք է հաշվի առնեն, որ բնիկ անգլիախոսները նույնպես ունեն պարզ խուլ («անշունչ») պայթականներ (մեր *պ, կ, տ* բաղաձայնների նման, unaspirated voiceless stops)։ Հատկապես **s** տառից հետո անգլերենի բոլոր տարբերակներում էլ **p, k, t** տառերը հնչում են ո՛չ թե իբրև շնչեղ խուլեր (ո՛չ թե մեր *փ, ք, թ* բաղաձայնների նման), այլ իբրև պարզ խուլեր (մեր *պ, կ, տ* բաղաձայնների նման)։ Այսինքն՝ բնիկ անգլիախոսը չի արտասանում *սԹրիթ, սԹրես, սՔրին, սՓայ* և այլն, այլ *սՏրիթ, սՏրես, սԿրին, սՊայ*։ Հատկապես ամերիկյան և կանադական անգլերենում պարզ խուլերը հանդիպում են նաև այլ դիրքերում, օրինակ՝ բառավերջում ու անշեշտ վանկերում։ Այնպես որ կարծելը, թե անգլերենում անխտիր միայն շնչեղ խուլեր են գործածվում, սխալ է։ Ուստի սխալ են հայերենի *սթրես, Սքոթ, Սթիվեն Սփիլբերգ* և «ս»-ին հաջորդող շնչեղ խուլերով այլ տառադարձումները, քանի որ դրանք ոչ միայն հակասում են անգլերենից տառադարձության՝ Ջահուկյանի հեղինակած կանոններին, այլև հենց անգլերենի արտասանությանը։ Հետևաբար, ցանկացած սկզբունքով էլ տառադարձելիս արևելահայերենում հիշյալ բառերի ճիշտ ձևերը պիտի լինեն՝ *ստրես, Սկոտ(թ), Ստիվեն Սպիլբերգ*։

Անգլերենի արտասանական առանձնահատկություններին ծանոթանալու համար կարող եք կարդալ, օրինակ, Catherine Anderson-ի «Essentials of Linguistics» դասագրքի (2018) «3.4 Aspirated Stops in English» գլուխը (ամբողջ գիրքը հասանելի է մեկից ավելի համացանցային կայքերում) և դիտել հետևյալ տեսանյութը։

Ինչ վերաբերում է այնպիսի եզրերի, ինչպիսին են *հիպոթեկը, մարկետինգը* և այլն, սրանց տարածված տառադարձումները (*հիփոթեք, մարքեթինգ*) չեն արդարացվում ոչ միայն առկա կանոններով, այլև հետևյալ պատճառով։ Միջազգային մասնագիտական եզրերի մեծամասնությունը ստեղծվում է հունալատինական բաղադրիչներով։ Օրինակ՝ *հիպոթեկ*ն ամբողջությամբ հունարեն բառ է (ὑποθήκη. հունարեն նախածանց + հունարեն արմատ), այսինքն՝ անգլերեն չէ և անգամ համարյա չի գործածվում անգլերենում (սրա անգլերեն հիմնական համարժեքը mortgage-ն է)։ «Մարկետինգ»-ն էլ թեև անգլերեն է, սակայն նրա հիմնական բաղադրիչը՝ «մարկետ»-ը, նույնպես անգլիական (գերմանական) ծագում չունի, այլ լատինական։ Իսկ հայերենն ունի թե՛ հունարենից, թե՛ լատիներենից տառադարձության դարավոր ավանդույթ։ Եվ ըստ այդմ այս բառերն արևելահայերենում ճիշտ է գրել *հիպոթեկ* և *մարկետինգ*։

Վերջին ձևերն արևելահայերենում նաև ավելի բնական են հնչում։ Ինչո՞ւ ավելի բնական։ Որովհետև արևելահայերենում (ինչպես նաև գրաբարում) պարզ խուլերն ավելի հաճախադեպ են, քան շնչեղները։ Այսինքն՝ մեր շուրթերից ավելի հաճախ հնչում են պարզ խուլերով բառեր, քան շնչեղ խուլերով։ Հենց սա է նաև պատճառը, որ եթե մի օտար մասնագիտական եզր պիտի յուրացվի արևելահայերենի կողմից, դառնա արևելահայերենի մաս, ապա նախընտրելի են այն բաղաձայնները, որոնք

ավելի հաճախադեպ են արևելահայերենում: Շնչեղ խուլերի առատությունը բառերում վերջիններիս տալիս է «արևելյան» բառերի տպավորություն, որովհետև սովորաբար թուրքերեն, ադրբեջաներեն, նոր պարսկերեն բառերն են արևելահայերենում արտահայտվում հիմնականում շնչեղ խուլերով, մինչդեռ եվրոպական ծագման (հունարեն ու լատիներեն) բառերն ավանդաբար արտահայտվել են պարզ խուլերով (բացի **th/θ**-ից և միայն հին փոխառություններում՝ նաև **φ/ph**-ից):

## ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԵԶՐԵՐԻ ՏԱՌԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆ

Վերոնշյալը նկատի ունենալով՝ անգլերենից վերցված **մասնագիտական եզրերը**, որոնց շուրջ 90 տոկոսը լատինական կամ հունական ծագում ունի, պետք է տառադարձվեն ըստ հայերենի դասական (և ոչ թե անգլերենից հայերեն) տառադարձության սկզբունքների, այսինքն՝ այնպես, ինչպես մշտապես տառադարձել ենք լատիներեն և հունարեն բառերը: Հայերենի դասական տառադարձությանը կարելի է ծանոթանալ ներքոբերյալ աղյուսակի միջոցով:

### ՀԱՅՈՑ ԱՅԲՈՒԲԵՆԸ

համադրությամբ՝
հունարեն այբուբենի,
հունարեն տառերի լատիներեն/անգլերեն և ռուսերեն համարժեքների,
հայերեն տառերի համար ստեղծված տառադարձական նշանների երեք համակարգերի
և
հայերեն տառերի թվանշանային համարժեքների

| Հայերեն | Անվանում | Հունարեն | Լատիներեն, անգլերեն՝ հունարենի համար | Ռուսերեն՝ հունարենի համար | ՄՀԱ/IPA (ՀՄ) | LOC | ISO 9985 (1996) | Թվարժեք |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ա ա | այբ | **Α α** | **a** | а | A a | a | a | 1 |
| Բ բ | բեն | **Β β*** | **b** | в | B b | b | b | 2 |
| *(վ)** | | | | | | | | |
| Գ գ | գիմ | **Γ γ*** | **g** | г | G g | g | g | 3 |
| *(ղ)** | | | | | | | | |

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Դ դ | դա | **Δ δ** | **d** | д | D d | d | d | 4 |
| Ե ե | եչ | **Ε ε** | **e** | е | E e | e | e | 5 |
| Զ զ | զա | **Ζ ζ** | **z** | з | Z z | z | z | 6 |
| Է է | է | **Η η** | **e** | и | Ē ē / Ê ê | ē / e' | ē | 7 |
| Ը ը | ըթ | | | | Ə ə | ə / e'' | ë | 8 |
| Թ թ | թո | **Θ θ** | **th** | ф | T‘ t‘ | t‘ | t’ | 9 |
| Ժ ժ | ժէ | | | | Ž ž | zh | ž | 10 |
| Ի ի | ինի | **Ι ι** | **i** | и | I i | i | i | 20 |
| Լ լ | լիւն | | | | L l | l | l | 30 |
| Խ խ | խէ | | | | X x | kh | x | 40 |
| Ծ ծ | ծա | | | | C c | ts | ç | 50 |
| Կ կ | կեն | **Κ κ** | **k** | к | K k | k | k | 60 |
| Հ հ | հո | | | | H h | h | h | 70 |
| Ձ ձ | ձա | | | | J j | dz | j | 80 |
| Ղ ղ *(լ)* | ղատ | **Λ λ** | **l** | л | Ł ł (Ġ ġ) | ł (gh) | ġ | 90 |
| Ճ ճ | ճէ | | | | Č č | ch | ç̌ | 100 |
| Մ մ | մեն | **Μ μ** | **m** | м | M m | m | m | 200 |
| Յ յ | յի | | | | Y y | y | y | 300 |
| Ն ն | նու | **Ν ν** | **n** | н | N n | n | n | 400 |
| Շ շ | շա | **Ξ ξ** | | | Š š | sh | š | 500 |
| *քս* | | **Ξ ξ** | **x** | кс | | | | |
| Ո ո | ո | **Ο ο** | **o** | о | O o | o | o | 600 |
| Չ չ | չա | | | | Č‘ č‘ | ch‘ | č | 700 |

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Պ պ | պէ | **Π π** | **p** | п | P p | p | p | 800 |
| Ջ ջ | ջէ | | | | J̌ ǰ | j | ǰ | 900 |
| Ռ ռ | ռա | **Ρ ρ** | **r** | р | Ṙ ṙ | r' | ṙ | 1000 |
| Ս ս | սէ | **Σ σς** | **s** | с | S s | s | s | 2000 |
| Վ վ | վեւ | | | | V v | v | v | 3000 |
| Տ տ | տիւն | **Τ τ** | **t** | т | T t | t | t | 4000 |
| Ր ր | րէ | | | | R r | r | r | 5000 |
| Ց ց | ցո | | | | C‘ c‘ | ts‘ | c’ | 6000 |
| Ւ ւ | վիւն / հիւն | **Υ υ** | **y, u** | и, в | W w | w | w | 7000 |
| *հ, իւ, ւ* | | **Υ υ** | | | | | | |
| Փ փ *(ֆ)*** | փիւր | **Φ φ** ** | **ph** | ф | P‘ p‘ | p‘ | p’ | 8000 |
| Ք ք *(խ)*** | քէ | **Χ χ** ** | **ch** | х | K‘ k‘ | k‘ | k’ | 9000 |
| *փս, ս* | | **Ψ ψ** | **ps** | пс | | | | |
| *ով* | | **Ω ω** | **o** | о | | | | |
| Օ օ (] աւ) | օ | | | | Ō ō | o' | ò | |
| Ֆ ֆ | ֆէ | | | | F f | f | f | |
| ու | | **ου** | **ou** | у | U u | u | ow | |

* Հունարեն **β** և **γ** տառերն ավելի ուշ շրջանում երբեմն նաև նորհունական արտասանության համաձայն էին տառադարձվում՝ **վ** և **ղ** համապատասխանաբար, ինչպես, օրինակ, ***Վ**առ**վ**առէ* և *Ա**ղ**աթոն* անուններում (փխ. *Բարբարէ և Ագաթոն*)։

** Ըստ հունարենից հայերեն տառադարձության նոր կանոնների (հեղ.՝ Գ. Ջահուկյան, «Հունական ծագում ունեցող բառերի տառադարձման մասին» որոշում, 1985)՝ նոր փոխառություններում հունարեն **φ-**ն պետք է տառադարձվի **ֆ** (օր.՝ *ֆանտաստիկա, ամորֆ* ևն), իսկ **χ**-ն՝ **խ** (օր.՝ *մեխանիկա, սխեմա* ևն)։ Հին փոխառությունների կամ հին ձևով տառադարձված և արդեն տարածված նոր փոխառությունների **փ-**ն ու **ք**-ն պահպանել (օր.՝ *փիլիսոփա, փասիան, փյունիկ, քաոս, քարտ, քլոր, քրոմ, քիմիա* ևն)։ Որոշման տեքստը

տե՛ս *Տերմինաբանական և ուղղագրական տեղեկատու,* Երևան, 2006, էջ 181-182:

Հապավումների բացատրություն
ՄՀԱ - միջազգային հնչյունային այբուբեն (Հյուբշման-Մեյեի ստեղծած տառադարձական նշանների համակարգը հայերենի համար (Antoine Meillet and Heinrich Hübschmann, Altarmenisches Elementarbuch, Heidelberg, 1913), որ որոշ փոփոխությունների է ենթարկվել Էմիլ Բենվենիստի կողմից և հայտնի է որպես Hübschmann-Meillet-Benveniste-ի տառադարձական համակարգ)

**IPA** - International Phonetic Alphabet (Hübschmann-Meillet-Benveniste)

**LOC** - Library of Congress

**ISO** - International Organization for Standardization

Սեդա Ստամբոլցյան

2021